Սպենտիարեան։

Կոմիտասը արդէն նոյնացած է մեզի հետ։ Բայց, կ՚արժէ եւ հարկ է անդրադառնալ մասնաւորապէս Վ. Սարգսեանի գործերուն վրայ՝ աւելի յարմար եւ հանդարտ մէկ առիթով։ Իր հեղինակութիւնները՝ լարաւոր նուագախումբի համար՝ կը մատնեն որ իր մէջ ցեղէն հզօր մասնիկ մը կայ՝ զգալու, երեւակայելու եւ ստեղծագործելու։ «Վիճակ»ը անդերա-գանցելի յաջողութիւն մը ունեցաւ, քաղաքիս յայտնի ջութակահարներու ճպոտին տակ։ Նոյնքան եւ փայլուն էր «Սարօ»ն («Անուշ»էն), զոր կա-տարեալ թէքնիքով երգեց՝ Տիկ. Մօ-րընօն։ (Այս առթիւ, չենք կրնար մոռնալ այս Հայուհիին եւ իր ամուս-նոյն՝ Տօքթ. Մօրընօնի անգնահատե-լի ջանքերը՝ երաժշտական Միու-թեան զարգացման մէջ։ Հայը այսքան յարատեւ չէր կրնար ըլլալ՝ իր սե-փական փառքին համար։ Թող թոյլ տրուի մեզի հրապարակաւ ծափահա-րել իր եռանդը, իր բարեկամութիւ-նը եւ իր համակրութիւնը՝ հանդէպ մեր ցեղին եւ արժէքներուն)։

Ջութակահար Սարգիս Ջէօրէք-ճեան առանձին նուագեց Սպենդիար-եանի «Հիճազ»ը, որ պահ մը Արեւելք փոխադրեց մեզ։ Ջէօրէքճեան արդէն իր տեղը գրաւած է Մարսէյլի յայտ-նի ջութակահարներուն մէջ։

Աւելորդ է յիշել յայտագիրը, երբ Արազ այնքան գեղեցիկ կերպով ներ-կայացուցած էր զայն՝ համերգին նախօրեակին։ Շնորհակալութիւն ի-րեն որ հոգ մը վերցուց իմ վրայէս, որուն համար ես ուշացած էի։ Եւ իր «Օրը Օրին»ը անհշմար անցած չէր Մարսէյլցիներուս կողմէ։ Հոս էին Զօմունեաց հարստութեան բոլոր ներ-կայացուցիչները։

Պէտք է յիշենք նաեւ Օր. Մ. Սի-մօնեանի մեներգը, զգացումով եւ քաղցրութեամբ թաթաւուն։ Իրեն կը մաղթենք քիչ մը համարձակութիւն ... բեմին վրայ։

Դաշնակին կ՚ընկերակցէր Տիկին Սիւզան Անտրէ, դաշնակի թագուհին, որուն մասին յաճախ գրած եմ, երբ կը կոչուէր՝ Օր. Արնօ։ Իր համակ-րութիւնը եւ իր սէրը մեր երգերուն հանդէպ՝ մեզ երախտագէտ կը ձգեն իրեն։

Համերգը տեղի ունեցաւ՝ Ծնունդի կէսօրէն ետք, Մարսէյլի ամէնէն շը-քեղ սրահին մէջ՝ Փալէ տէ Ֆօնկրէ։ Կային բազմաթիւ Ֆրանսացիներ եւ ուրիշ մտաւորականներ։ Առաջին ան-գամ ըլլալով ներկայ էր նաեւ Խաչա-տուրեան Եպիսկոպոս։ Սրահ խումբը կը բաղկանար՝ 60 հոգիէ։

Ուր էր թէ, տարուան մէջ մէկէ ա-ւելի անգամներ առիթը տրուէր մե-զի՝ ապրելու հայ երգին արեւն ու մշուշը։

Կոմիտա՛ս, Կոմիտա՛ս, ինչ թանկա-գին ժառանգութիւն տուիր մեզի, եւ դուն փլար քու փառքին միջօրէին չհասած։ Ուժ տուր, որ քու բարձր-ուղէշ հասակդ եւ հանճարով ծանր գլուխդ քալեն՝ մեր նոր ստեղծագոր-ծողներու երեւակայութեան մէջէն։ Բեղմով միայն հպարտ ենք եւ մեր ճակատը բարձր այս ապերախտ եւ օ-տար ափերուն վրայ։

ՈՒԽՏԱՒՈՐ

## ՏՕՆԱԾԱՌ ՄԱՆՋՈՒԿՆԵՐՈՒ ՕՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Կազմակերպուած ՅԱՌԱՋԴԻՄԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ եւ ՖՐԱՆՍ. ԿԱ-ՊՈՅՏ ԽԱՉԻ ՊԱՆԵԽՕ-ՔԱՇԱՆԻ մասնաճիւղին կողմէ։

Կիրակի, 5 Յունուար, ժամը 3-8, 150, Ռուբ տ՚Օրլէանի սրահին մէջ։

Նախագահութեամբ՝ Պ. ՍԵԴՐԱԿ ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆԻ

Ղեկավարութեամբ՝ Պ. ՆՇԱՆ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆԻ

Մանուկներու պտղաբաշխութիւն Կ. Խաչի կողմէ, անակնկալներ։

Ծախսերու մասնակցութեան համար 2 ֆրանք։



ՊԷԼՎԻԼԻ ԸՆՏԱՆԵԿԱՆ վիճակա-խաղէն շահած է 178 թիւը, անթելի գործիք մը։ Դիմել՝ 34, Rue Bisson, Վարպետեանի։


17, Rue Damesme. PARIS (13)
Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ նոր ելմտացոյցը հինգ միլիառ տոլարի (75 միլիառ ֆրանք) ծախք մը կը ցուցնէ, առանց հաշուելու գործազուրկներու նպաստը: Ազգ. պաշտպանութեան յատկացուած է մէկ միլիառ տոլար (15 միլիառ ֆրանք): Միեւնոյնատեն 58 միլիոն տոլարի ծախք մը կը նախատեսուի, 884 օդանաւ շինելու համար (507ը՝ բանակին, 377ը նաւատորմին):

ՕՓԵՐԱՆ ՋՈՐՍ ԱՄԻՍ ՊԻՏԻ ՓԱԿՈՒԻ, զանազան նորոգութեանց համար: Թուականը չէ որոշուած տակաւին:

ՔՍԱՆ ՏԱՐԵԿԱՆ ԱՄԵՐԻԿՈՒՀԻ ՄԸ ԱՄԼԱՑՈՒԱԾ է Սան-Ֆրանչիսկոյի մէջ, մօրը յանձնարարութեամբ: Աղջիկը, որ 10 միլիոն տոլարի ժառանգութիւն ունի, դատ բացաւ մօրը դէմ, 500,000 տոլար հատուցում պահանջելով: Հօրը կտակին համաձայն, աղջիկը եթէ ամուսնանար եւ զաւակներ ունենար, անոնք բաժին մը պիտի առնային հարստութենէն, իսկ եթէ անզաւակ մեռնէր, ժառանգութիւնը պիտի մնար մօրը: Այս վերջինը երկու բժիշկներ կանչած եւ իրբեւ տկարամիտ ցուցնելով աղջիկը, ամլացման գործողութիւն կատարել տուած էր:

ԱԼԵՔՍԱՆԴՐ ԹԱԳԱՒՈՐԻՆ ՍՊԱՆՈՒԹԵԱՆ մեղսակից մը ձերբակալուեցաւ Աւստրիոյ մէջ: Այս մարդը, Մարճան Պայէր, 30 տարեկան, գինովցած ըլլալով, ճաշարանի մը մէջ կը պարծենար թէ ինք օգնեց թագաւորին սպանութեան, բայց չկրցաւ մասնակցիլ, որովհետեւ Եուկոսլաւիոյ ոստիկանութիւնը զինքը ձերբակալած էր ուրիշ պատճառով եւ 15 տարի բանտարկութեան դատապարտած: Սակայն եւ այնպէս կրցած էր Աւստրիա փախչիլ:— Այս պատմութիւնը պատմելէ յետոյ, մարդը թոյն լեցուց գաւաթին մէջ, բայց բժիշկները կրցան փրկել: Այժմ բանտարկուած է:

ԵՐԵՍՓ. ԸՆՏՐՈՒԹԵԱՆՑ համար նախապատրաստութիւններ կը տեսնուին այժմէն: Հաւանական է որ ընտրութիւնները կատարուին ապրիլ 19ին եւ 26ին, կամ ապրիլ 26ին եւ մայիս 3ին:

ԱՌԵՒՏՐԱԿԱՆ ՊԱՅՄԱՆԱԳԻՐ մը կնքուեցաւ Ֆրանսայի եւ Խ. Միութեան միջեւ, մինչեւ 1936 դեկտ. 31 երկարաձգելով 1934 յունուար 11ի համաձայնութիւնը:

ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԷՆ վերջ, Ապահովութեան Տեսչութեան (Ջեկա) եւ սահմանապահ ոստիկանութեան անդամներն ալ մասնաւոր համազգեստ մը եւ նշանակներ պիտի ունենան, ամբողջ Խ. Միութեան մէջ:

ՅՈՒՆԱՍՏԱՆ որոշեց հատուցում պահանջել Ազգերու Դաշնակցութենէն, մեծ կորուստներ կրած ըլլալով, իբրեւ հետեւանք Իտալիոյ դէմ գործադրուած պատժական տնօրինութեանց:

---

## Հ. Յ. Դ.

**Գաղութ**

### Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՇՐՋԱՆԱՅԻՆ ԿՈՄԻՏԷԻ ԺՈՂՈՎՆԵՐԸ

ՄԱՐՍԷՅԼԻ «Զաւարեան» ենթակոմիտէի ժողովը տեղի կ'ունենայ այսօր Չորեքշաբթի, երեկոյեան ժամը 8ին, սովորական հաւաքատեղին:

Կը խօսի՝ ընկ. Ս. ՎՐԱՑԵԱՆ:

«Ընկեր Կարօ» ենթակոմիտէի ժողովը տեղի պիտի ունենայ, Հինգշաբթի (յունուար 9), երեկոյեան ժամը 8ին, «Դրօշակի» տան մէջ:

Կը խօսի՝ ընկ. Ս. ՎՐԱՑԵԱՆ:

ՄԱՐՍԷՅԼԻ «Ռոստոմ», «Իշխան» ենթակոմիտէներու եւ Վահագն խումբի ժողովը տեղի կ'ունենայ, Ուրբաթ (յունուար 10), երեկոյեան ժամը 8ին, սովորական հաւաքատեղին:

Կը խօսի՝ ընկ. Ս. ՎՐԱՑԵԱՆ:

ԼԻՈՆԻ «Վարանդեան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին, 181, Cours Lafayette «Զարդարեան» գրադարանին մէջ:

Կը խօսի ընկ. Ս. ՎՐԱՑԵԱՆ:

---

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Պորտոյի կոմիտէն ցաւակցութիւն կը յայտնէ իր վեթերան ընկերոջ ԼԵՒՈՆ ԹԱԹԷՈՍԵԱՆԻ մահուան առթիւ իր պարագաներուն:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ տիկ. Մուրատեան, Տէր եւ տիկ. Մկրտիչեան եւ զաւակունք, Տէր եւ տիկ. Ճարաճեան իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց, որոնք նամակով, ծաղկեպսակով եւ կամ անձամբ իրենց ցաւակցութիւնը յայտնեցին իրենց սիրելի որդւոյն, անհբորդւոյն եւ սանին՝

*ՄԱՐՏԻՐՈՍ ՄՈՒՐԱՏԵԱՆԻ*

վաղաժամ մահուան առթիւ, որ տեղի ունեցաւ 31 դեկտ. 935 փարիզ:

### ԳՏՆՈՒԱԾ

Յառաջի 3003 թիւով Այրի Տիկ. Սրբուհի Ներկարարեան կը փնտռէր իր փեսան եւ աղջիկը:

Իրենց հասցէն՝ Chahrigian Simon, 333, Chemin de la Madrague Ville, Marseille.



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռեմ ծնողքս՝ Ֆրնուզցի Արթին (Ալթըփարմագ) եւ Վարդուհի Պարսամեան: 1914ին Մարաշի ճամբով աքսորուած են դէպի անապատները: Կը խնդրուի վերապրող Ֆրնուզցիներէն հետաքրքրուիլ սոյն փնտռտուքով: Ողջ եւ ստոյգ տեղեկութիւն տուողին կը նուիրեմ մէկ տարեկան Յառաջ եւ վեցամսեայ Ազդակ եւ 250 ֆրանք նուէր: Կը խնդրուի Սուրիահայ թերթերէն արտատպել: Իմացնել Տիկին Լուսիա Մոմճեանի, Ruc d'Italie, 48, La Tour da Pın, (Isère) France.

— Կը փնտռեմ եղբայրս ընիկ Թօգաթցի՝ Լեւոն Գարընճեան, մօր անուն՝ Վերոն, հօր անուն՝ Կարապետ, եղբօր անուն՝ Հաճի Միհրան, ծնած 1905ին Թօքատ: 1915ի տարագրութեան տեսնուած է Ֆրունճըլար Մալաթիոյ շրջան): Ստոյգ եւ ողջ տեղեկութիւն տուողին կը նուիրեմ մէկ տարեկան Յառաջ, վեցամսեայ Ազդակ եւ 300 ֆրանք նուէր: Իմացնել Արաքսի Եազմաճեանի, Marchand Pantoufles, Rue d'Italie. La Tour du Pin. Isère. (France).

Կը խնդրուի Արտասահմանի եւ Սուրիահայ թերթերէն արտատպել որպէս ազգային եւ մարդկային պարտականութիւն:


**17, Rue Dameame, PARIS (13)**

**Le Gérant: H. STEPHAN**

**Imprimerie A. DER (AGOPIAN)**




















### ՆՈՒԷՐՆԵՐ ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

ՎԻԷՆ.— Հետեւեալ նուէրները եղած են Մանուկներու Օրուան առթիւ.—

Ա. Զաքարեան, Մ. Նաճարեան 20ական ֆրանք, Պ. Մանուկեան, Ա. Պարոնեան, Յ. Մկրեան, Մ. Կարապետեան, Պ. Փլթոյեան, Տիկին Ա. Թորիկեան, Գ. Սիմոնեան, Ն. Խաչիկեան, Խ. Պետրոսեան, Յ. Զարգարեան, Տիկին Ո. Պետրոսեան, Մ. Գալայճեան, Ս. Լօքմիզեան 10ական, Տիկին Ա. Գալայճեան, Լ. Քէչիչեան, Ա. Ասլանեան, Տիկին Մագինաճեան, Օր. Մ. Մուրատեան, Պ. Այանեան, Տիկին Խուկոյեան, Փրանսացի վարժուհին, Տիկին Զաքարեան, Լ. Տոլմաճեան, Դ. Երեմեան, Ս. Հայրապետեան, Վ. Աւոյեան, Լ. Մուրատեան, Տիկին Ա. Խաչիկեան 5ական, Կ. Թումայեան 4, Տիկին Տէր Ղազարեան, Տիկին Զլպաքեան, Օր. Պ. Մաքինաճեան, Խ. Պետրոսեան 2ական, Օր. Ժըմըլիէվ, Քէչիչեան, Լ. Տուտում մէկական ֆրանք, ընդհ. գումար 260 ֆրանք:

Ֆ. Կ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղը կը բանայ դասընթացքներու շարք մը ձրիաբար, 12 տարեկանէն վեր եղող չափահասներու համար:

Կ'աւանդուին հայերէն լեզուի եւ ազգ. պատմութեան դասեր, Պ. Պ. Ա. Արծրունիի եւ Վ. Համբարձումեանի կողմէ:

Դասընթացքները կը սկսին յունուար 16ին, հինգշաբթի օրերը ժամը 9.30—12, Միւթիւալիթէի սրահներէն մէկուն մէջ:

Արձանագրութեան համար դիմել՝ Օր. Պետրոսեանի, 6, Rue de Trétagne, եւ կամ հեռաձայնել Montmartre 13-09:

### ԹԱՆԿԱԳԻՆ ԱՌԻԹ

Ալպանիայէն կ'ուզուի կովկասեան նուագախումբ մը շարք մը նուագահանդէսներ տալու համար: Բոլոր ծախքերը կ'ապահովուի հաստատ համաձայնագրով: Շահագրգռուողները կրնան մանրամասնութիւններ առնել «Յառաջ»ի վարչութենէն կամ ուղղակի դիմելով Dr. A. Bournazianի, Elbasan, Albanie.

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ԻՏԱԼԱՑԻ ԴԱՄԱԼԻՖՆԵՐՈՒ ՀԱՄԱՐ բանակատեղի մը պիտի շինուի Պոնթայի մէջ (Եուկոսլավիա)։ Համաշխարհային պատերազմէն ի վեր այդ երկիրը ապաստանած իտալացի դասալիքներուն թիւն է իրր 2000, որոնք արգելափակուած են զանազան վայրերու մէջ։

ՌԱԶՄԱԿԱՆ ԵՐԿԱԹՈՒՂԻ մը պիտի շինուի Եգիպտոսի մէջ, Լիբիոյ սահմանին վրայ, 150 քիլոմեթր հեռաւորութեամբ։ Եգիպտական կառավարութիւնը 94,000 ոսկի յատկացուցած է այս շինութեան, իսկ անգլիականն ալ՝ 20,000 ոսկի։

ԹԱՏՐՈՆՆԵՐՈՒ, սինէմաներու եւն. տնօրէնները ժողով մը գումարելով, բողոքեցին կարգ մը տուրքերու դէմ եւ որոշեցին ընդհ. գործադուլ հռչակել։ Թուականը որոշուած չէ տակաւին։

ԱՀՌԵԼԻ ՓՈԹՈՐԻԿ մը պայթեցաւ Անգլիոյ, Ֆրանսայի, Գերմանիոյ եւ ուրիշ քանի մը երկիրներու մէջ, աննկարագրելի աւեր սերմանելով եւ 68 հոգիի մահուան պատճառ դառնալով։ Անգլիոյ մէջ մեռան 21 հոգի, մեծամասնաբար խեղդուելով կամ արմատախիլ ծառերու տակ մնալով։ Լոնտոն - Փարիզ օդանաւային հաղորդակցութիւնը դադրեցաւ։ Ֆրանսայի մէջ, մասնաւորապէս Պրըթանիի կողմը հեղեղաման անձրեւներ տեղացին։ Ֆինլանտայի ծոցին մէջ խորհրդային «Տօնէց» նաւը ընկղմեցաւ իր 39 նաւաստիներով։

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆԸ հրամանագրով մը ջնջեց ոչ - աշխատաւոր կամ խրաւազուրկ քաղաքացիներու զաւակներուն դէմ հաստատուած խտրութիւնները, բարձրագոյն վարժարաններու յաճախելու մասին։ Տարրական դպրոցներ պիտի բացուին այս կարգի տղոց համար, առանց նըկատի առնելու ծնողքներուն իրաւական վիճակը։ Վերջին վիճակագրութեանց համաձայն, 797,000 ճարտարագործական բանուորներ աւարտած են արհեստագիտական վարժարանները։

ՊԱԼՔԱՆԵԱՆ պետութեանց ներկայացուցիչները քանի մը օրէն ժողով պիտի գումարեն Պելկրատի մէջ, մասնաւորապէս քննելու համար տնտեսական խնդիրներ։ Հարցը ուղղակի կապ ունի Թուրքիոյ հետ, որ սահմանափակած է ներածումները, բաժնեցուցակի դրութեամբ։

ՆԱԽԱՑԻՆ ԽՈՐՀՐԴԱԺՈՂՈՎԻՆ յետաձգման առթիւ, Լոնտոնի թերթերը կը գրեն թէ ի հարկին Ի. Միութիւնը եւ Գերմանիան ալ պիտի հրաւիրուին, եթէ ճափոն վերջնապէս քաշուի։

ԳՈՐԾԱՐԱՆԱՏԷՐ ՄԸ, Փիէռ Բուսէլ, 64 տարեկան, առջի օր սպաննեց կինը, 53 տարեկան, խեղդեց զինք եւ յետոյ բաղնիք մտնելով անձնասպան եղաւ ատրճանակով մը։ Նախընթաց օրը հրդեհ մը մոխիր դարձուցած էր իր գործարանը։ Այրը դաժան բնաւորութիւն ունէր եւ քանի մը անգամ փախցուցած էր կինը։

ՄԱՀՈՒԱՆ ԴԱՏԱՊԱՐՏՈՒԵՑԱՆ Սվերտլովսկի (Ռուսաստան) մուշտակի թրըսթին դեր - տնօրէնը եւ հաշուակալը, որոնք 1,255,000 րուբլի խլրացուցած էին երկու տարուան մէջ։

## Հ. Յ. Դ.

**Գաւառ**

ԼԻՈՆԻ «Վարանդեան» կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այսօր երկուշաբթի երեկոյ ժամը 8.30ին, 181, CoursLafayette «Զարդարեան» գրադարանին մէջ։

կը խօսի ընկ. Ս. ՎՐԱՑԵԱՆ։

ՏԷՍԻՆԻ կոմիտէն ընդհանուր ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս երեքշաբթի երեկոյ Հ. Յ. Դ. տան մէջ՝

կը խօսի՝ ընկ. Ս. ՎՐԱՑԵԱՆ։

ՍԷՆ Թ'ԷԹԻԷՆԻ Անտոք ենթակոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ կուչք, կեփին խումբերու. Թալատիյէի եւ Բօշթայի ընկերները այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին սովորական հաւաքատեղին։ կարեւոր օրակարգ։

---




Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (13)

Le Gérant: H. STEPHAN

# ԱԹԱԹԻՒՐՔԻ ԴԷՄ ՍԱՐՔՈՒԱԾ ՄԱՀԱՓՈՐՁԻՆ ԴԱՏԱՎԱՐՈՒԹԻՒՆԸ ԷՆԿԻՒՐԻԻ ՄԷՋ

## Երեսփոխան Ալի Սայիպ կուգայ...

Յունուար 9ին Էնկիւրիի Եղեռնադատ ատեանին առջեւ սկսաւ դատավարութիւնը Աթաթիւրքի (Մ. Քէմալ) դէմ սարքուած մահափորձին, Ատեանին կանուխէն մեծ բազմութիւն մը խռնուած էր դատական պաշտօնատունը: Ոստիկանութիւնը խիստ միջոցներ ձեռք առած էր եւ միայն հրաւիրագրով անձերը կ'ընդունէր:

Պոլսոյ Թուրք թերթերէն կը քաղենք հետեւեալ մանրամասնութիւնները, դատավարութեան մասին.—

Ժամը 13ին, արդէն իսկ սաեղ ձգելիք տեղ չկար սրահին մէջ: Ժամը 14ին ներս մտաւ դատական մարմինը, — նախագահ՝ Թալաթ, անդամները՝ Հայրուլլահ եւ Ճէմալ: Ընդհ. դատախազի աթոռը կը գրաւէր Անգարայի ընդհ. դատախազ ՊահաՍ. րըդան:

Նախագահը լուրթիւն յանձնարարեց ունկնդիրներուն: «Աղմուկ չեմ ուզեր», ըսաւ: Յետոյ բարապանը ներքինքին մէջ պոռաց.—«Եահեա եւ ընկերները»: Ոստիկան - ժընտարմներու ընկերակցութեամբ բերուեցան ամբաստանեալները: Նախ ներս մտաւ Ուրֆայի երեսփոխան Ալի Սայիպ եւ գլուխով բարեւեց դատական մարմինը: Յետոյ կարգով ներս մտան Իսլէյիր, Շէմսէտտին, Իտրիս, Արիֆ, Ահմէտ օղլու Շապան եւ Եահ-

Իտրիս 1294ի ծնունդ է, Իսլահիէցի, 15 տարիէ ի վեր Մարաշ կ'ապրի, երկրագործ է, 8 զաւակի տէր:

Շապան 314ի ծնունդ է, Կէօքսիւի Մէհմէտլի գիւղէն: Ամուսնացած է, երկու զաւակ ունի: Ահմէտ օղլու Իսմայիլ ըսաւ թէ Մէհմէտ պէյ գիւղէն է, երկրագործ եւ կապ չունի մահափորձին հետ:

Կարգը եկած է Ուրֆայի երեսփոխան Ալի Սայիպի. ոտքի կանգնած է եւ դեփդեղին է: Ըսաւ թէ 303ի ծնունդ է, Քէրքիւքցի է, ամուսնացած է, 4 զաւակ ունի, աւելէ առաջ չէ դատապարտուած:

Հարցաքննութիւնը աւարտելէ յետոյ, Նախագահը հարցուց Ալի Սայիպի.

— Ձեր իրաւունքն է պաշտպանաժամ ուզել: Կ'ուզէ՞ք:

Անոր փոխանորդը՝ փաստաբան Համիտ Շէվքէթ ըսաւ թէ ընդհակառակն կ'ուզէն որ փութացուի դատավարութիւնը: Նոյն պատասխանը տուին միւս ամբաստանեալները:

Նախագահ.— Դուք կ'ամբաստանուիք թէ գինեալ կազմակերպութիւն մը բրած էք, հանրապետութեան նախագահ Աթաթիւրքը մահափորձի ենթարկելու համար: Հիմա պիտի կարդացուին նախնական քննութեան

...

# ԻՐԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

«Յառաջ»ի ՏԱՐԵԿԱՆ բաժնեգինն է 200 ՖՐԱՆՔ, ՎԵՑԱՄՍԵԱՆ՝ 100:

Ստիպուած ենք բոլորին ուշադրութեան յանձնել այս պարագան, նկատի առնելով կարգ մը անկանոնութիւններ որոնք զգալի վնաս կը պատճառեն մեզի:

Գալով հաստավաճառի, որ կարեւոր գումար մը կը կազմէ Թաւրիզի մէջ, մեր գործակալին հետ համախորհուրդ, որոշած ենք բարձրացում մը կատարել, պարզապէս ՄԵՐ ՎՆԱՍԸ ՆՈՒԱՁԵՑՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ:

Ահա քանի մը տարիէ ի վեր մէկ թիւը կը ծախուի 40 տինարի, ինչ որ կը նշանակէ 15 ՏԻՆԱՐ ՎՆԱՍ իւրաքանչիւր թիւի վրայ: (Մի՛ մոռնաք որ թղթատարի ծախքը 15 սանթիմ է, իւրաքանչիւր թիւի համար):

Մեր ուժերէն վեր ըլլալով աւելի երկար ատեն կրել այս վնասը, մեր գործակալը 1936 ՓԵՏՐ. 1ԷՆ ՍԿՍԵԱԼ ԻՒՐԱՔԱՆՉԻՒՐ ԹԻՒԸ ՊԻՏԻ ԾԱԽԷ 50 ՏԻՆԱՐԻ: Այս ալ վնաս է, բայց առ այժմ տեղի տալով մեր գործակալ Խաչիկ Մելքումեանի առաջարկին, չուզեցինք աւելի բարձրացնել:

ԱՅՍ ԱՌԹԻՒ ՆՈՐԷՆ ԿԸ ՅԻՇԵՑՆԵՆՔ ԹԷ ԲԱԺՆԵԳՐՈՒԹԻՒՆԸ ԲԱՑԱՐՁԱԿԱՊԷՍ ԿԱՆԽԻԿ Է ԵՒ ՄԵՐ ԳՈՐԾԱԿԱԼՆԵՐԸ ԱՅՍ ՊԱՅՄԱՆԷՆ ԿՐՆԱՆ ՇԵՂԻԼ ՄԻԱՅՆ ԻՐԵՆՑ ԱՆՁՆԱԿԱՆ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՈՒՈՒԹԵԱՄԲ:

...

## ՁԱՅՆԵՐ ԳԱՒԱՌԷՆ

### Խնչոյք

ՓԻՒԺԻ ՍԻՒՐ ԱՐԺԱՆ, (Յառաջ) ...

...

(Մնացեալը յաջորդիւ)

ԿԱՐԴԱՑԷՔ ԵՒ ՏԱՐԱԾԵՑԷՔ «ՅԱՌԱՋ»

...

Նկարիչ Պուէնկէլ (Պէռնար Լանք -

...

ՆԻՒԹԵՐ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՀԱՄԱՐ

# ՃԷՄԱԼ ՓԱՇԱՅԻ ՅԻՇԱՏԱԿՆԵՐԸ

## ՀԱՅԿԱԿԱՆ ՀԱՐՑ

Վերածեց՝ Պ. ՖՐՈՒՆՃԵԱՆ

Քանի որ պատերազմը վերջացած է, ասպետական չարժում մը պիտի նկատէի, եթէ խոստովանուէր ճըշմարտութիւնը հասարակաց կարծիքին առջեւ:

Եթէ Մանտէլշթամ դարձեալ կը պնդէ թէ այդ դէպքերը ուրիշ բան յոյց չեն տար, բայց եթէ դիմադրութեան փորձ մը ...

նայ մխիթարել, այն է որ իրաւ երեք միլիոն զոհեր տուաւ համաշխարհային պատերազմին, բայց իրականութիւն է որ մեր ժառանգական թշնամին՝ ցարիզմը յաղթահարուած եւ խորտակուած է:

Պետութիւններու կարգին, զոր դէպքերը առեղծեցին Կովկասի մէջ, ...

...

Խօ

ՎԻՐՔ

9.— Օքթավ Թիսիէ, Պայոնի քաղաքապետական դրամատան տնօրէնը, եօթը տարի տաժանակիր աշխատանքի եւ 100 ֆրանք տուգանքի, իբրեւ կեղծարար վաւերաթուղթերու եւ իբրեւ գողցուած ապրանք ստացող։

Բացի այս վերջինէն, դատարանը նկատի առաւ մեղմացուցիչ պարագաներ՝ միւս ամբաստանեալներուն համար։

Իսկ ազատ արձակուեցան Տիկին Արլէթ Սթավիսքի, «Լա Վոլոնթէ» թերթին խմբագիրը՝ Տիւպառի, ծանօթ ազգայնական լրագրող Բամիյ էմառ, հրապարակագիր Փօլ Լէվի, Սթավիսքիի գործակալներէն Ռոմանելլօ, փաստաբաններ Կիպու-Ռիպօ եւ Կօլիէ եւայլն, ընդամէնը 11 հոգի։

Դատապարտեալներէն անոնք որ երաշխաւորութեամբ ազատ արձակուած չէին, անմիջապէս հանուեցան բանտէն, ուր ոմանք մնացած էին մինչեւ երկու տարի։ Տիկին Սթավիսքի լացաւ, երբ իր պաշտպան փաստաբանը, հռչակաւոր Մօրօ Ժիաֆէրին հաղորդեց անպարտութեան լուրը, բայց չուտով գտաւ ինքզինքը։ Իսկ միւս անպարտները փղձկելով համբուրուեցան իրենց փաստաբաններուն հետ։

Ողբալի էր դատապարտեալներուն վիճակը։ Կառու բացագանչեց.— «Ես կեղծարա՞ր, ի՜նչ խայտառակութիւն»։ Նախկին զօրավար Պառտի, որ Պուլկարիոյ մէջ ալ անցեալ մը ունեցած է, աղաղակեց.— «խե՛ղճ կինս»։ Փօլ Կէպէն հառաչեց յուսահատօրէն. «Ինծի ուրիշ բան չի մնար բայց եթէ անձնասպան ըլլալ»։ Ռոմանելլօ, որուն հարցաքննութիւնը զուարճալի տեսարաններ պարգած էր, սկսաւ կըտորներ արտասանել... Շէյքսփիրէն, երբ իմացաւ որ անպարտ է։

Տիկին Սթավիսքի յայտարարեց թէ խելքը գլուխը պիտի ժողվէ եւ գործ պիտի փնտռէ, ինքզինքը մոռացութեան տալով եւ ի հարկին արտասահման քաշուելով։ Այս առթիւ պատմեց թէ ամէն օր զարմանազան առաջարկներ կ՚ընդունի։ Օրինակ, առաջարկեր են կաբելայի մը վարիչի պաշտօնը։ «Իմ մելամաղձիկ դէմքս տասը վայրկեանէն պիտի փախցնէ յաճախորդները» ...։

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

Պ. ԷՌԻՕ վերջնապէս որոշեց քաշուիլ ոչ միայն դահլիճէն, այլ եւ արմատական կուսակցութեան նախագահութեան թեկնածութենէն։ Հաւանական չէ որ մնան միւս վեց նախարարները։ Կուսակցութեան երեսփոխաններուն մեծամասնութիւնը բոլորին ալ հրաժարումը պահանջած է։ Ուրեմն դահլիճը կը գտնուի նոր եւ աւելի սուր տագնապի մը առջեւ, Ազգերու Դաշնակցութեան ժողովէն անմիջապէս վերջը։

ԱՆԳԼԻՈՅ ԹԱԳԱՒՈՐԸ ծանրապէս հիւանդացած ըլլալով, բժիշկները անարին վերեւ կը հսկեն գիշեր ցերեկ։

ՔԱՂԱՔԱԿԱՆ ՏԱՐԱԳԻՐՆԵՐՈՒ վիճակին բարւոքման համար, պատուիրակութիւն մը ներկայացաւ ներքին նախարարին, նախագահութեամբ Պ. Փօլ Փէւէնի։ Պատուիրակութեան մէջ կը գտնուէր Տիկ. Մակտըլէն Փազ, յանուն Օտար Տարագիրներու պաշտպանութեան կոմիտէին։ (Ընթերցողները կը յիշեն իր վերջին սրտցաւ գրութիւնը, թարգմանուած «Յառաջ»ի մէջ)։

ԻՐԱՒԱԳԻՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ դասադուլին առթիւ, ծանր խռովութիւններ պատահեցան ուրբաթ օր եւ երէկ։ Բազմաթիւ ձերբակալութիւններ կատարուեցան։ Վիրաւորներն ալ կարեւոր թիւ մը կը կազմեն։ Գաւառական համալսարաններու ուսանողներուն մէկ մասն ալ միացաւ դասադուլին, իբրեւ համերաշխութեան ցոյց։

ՆՈՅԵՄԲԵՐ 24էն ի վեր կորսուած համարուելէ վերջ, ողջ առողջ գտնուեցան երկու ամերիկացի խուզարկուներ, հարաւային բեւեռի սառոյցներուն վրայ։ (16.000 քիլոմեթր հեռու)։

ԱՌԱՋԻՆ ՃԱՌԸ խօսեցաւ Անգլիոյ արտաքին գործերու նոր նախարարը, Պ. Իտըն, շատ զգոյշ եւ ջերմապէս պաշտպանելով հաւաքական ապահովութեան սկզբունքը, «պայմանաւ որ միւս պետութիւններն ալ համախոհ հուրդ գործեն»։

## Հրապարակային բանախօսութիւն

կազմակերպուած Հ. Յ. Դ. ԼԻՈՆԻ ԿՈՄԻՏԷԻ ԿՈՂՄԷ
15 փետր. շաբաթ երեկոյ, 3րդ Թաղապետարանի սրահին մէջ
կը խօսի Ընկ. Ս. ՎՐԱՑԵԱՆ

## Երեկոյթ-պարահանդէս

կազմակերպուած Հ. Յ. Դ. ՇԱՎԻԼԻ ԱՐՇԱԼՈՒՅՍ... ԽՈՒՄԲԻՆ ԿՈՂՄԷ
19 յունուար, կիրակի ժամը 4էն մինչեւ կէս գիշեր
Rue Carnotի (Շավիլի Սէն Լազար կայարանին կողմը) սրահին մէջ
ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. Ս. ՎՐԱՑԵԱՆ
կը նուագէ ԵՓՐԱՏ նուագախումբը
Գեղարուեստական բաժնին կը մասնակցի ընկ. Թորոսեան։
Նուագ եւ պար — Աժան պիւֆէ
Մուտք՝ 5 ֆրանք

### ԳՐԱԿԱՆ ԵՐԵԿՈՅ

Վրացի բանաստեղծ Վաժա Փշավելայի մահուան 20րդ տարեդարձին առթիւ, այսօր կէսօրէ վերջ ժամը 5ին Musée Socialի մէջ, 5 rue Las Cases (Մեթրօ Solferino), տեղի կ՚ունենայ գրական երեկոյ։

Կը խօսին՝ Կվազավա եւ Պերիձէ։

### Խիստ շահաւոր

Ստիպուած ըլլալով մեկնիլ եղբօրս մօտ (Արժանթին), ծախու է կօշկակարի խանութս, դիւրամատչելի պայմաններով։ Ունիմ կօշիկի նորոգութեան եւ չափու վրայ ապսպրանք տուող պատրաստ յաճախորդներ։

Մանրամասնութեանց համար դիմել 11 rue Rodier, Փարիզ (9).

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Յ. Կ. Խաչի Պաննէօ քաղաքի Մասնաճիւղը շնորհակալութիւն կը յայտնէ Պ. Սահակ Յովհաննէսեանի, որ Մանուկներու Օրուան առթիւ կազմակերպած էր Մասնաճիւղիս գեղարուեստական բաժինը։

### ԳԱՑԷՔ ՏԵՍԷՔ
**CIGALE CINÉMA**
60 Avenue de Saxe. LYON.

### ԳԱՑԷՔ ՏԵՍԷՔ ԼԻՈՆԻ ՄԷՋ
**CinémaREXY**
Cours Lafayette, angle Rue Garibaldi.

### ԱՆԴՐԱՆԻԿ ՅՈՒՇԱՐՁԱՆԻՆ ՀԱՄԱՐ

—•—

Ֆրանսական Ազգ. Վիճակահանութենէն բախտաւորուած հայրենակիցներէ յանձնախումբս շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ գումարները.—

Պ. Պ. Վ. Մ.ի կողմէ 400 ֆր., Յ. Տ.ի կողմէ 200 ֆր., Յ. Գ.ի կողմէ 100 ֆր., Մ. Մ.ի կողմէ 100 ֆր., փոխան ծաղկեպսակի՝ Պ. Ե. Օզանեանի կողմէ զանազաններէ հաւաքուած 55 ֆր., Պ. Բ. Տէօվլէթեանի կողմէ զանազաններէ հաւաքուած 30 ֆր., Պ. Ա. Տէօվլէթեանի կողմէ զանազաններէ հաւաքուած 150 ֆր., Պ. Ն. Զօրագեանի կողմէ Բլիննեանցուրի շրջանէն հաւաքուած 150 ֆր., Հ. Մ. Ը. Մ.ի սքաուտներու համախմբումի պնակէն մնացեալ հասոյթ 43,50

| | |
|---|---|
| Դումար | 1228,50 |
| Նախորդ գումար | 10030,55 |
| Ընդհ. գումար | 11,259,05 |

Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme, PARIS (13)
Le Gérant: H. STEPHAN



դաշինքի մը հետ, մասնակցութեամբ Եգիպտոսի բոլոր հոսանքներուն: Ազգայնականները ոչ միայն կ'ընդդիմանան Անգլիոյ նախապայմաններուն, այլեւ զայրացած են, խմանալով որ բրիտանական մարզպանըադղարարած է թէ Անգլիա վերստին պիտի քննէ Եգիպտոսի սահմանադրութիւնը, եթէ չընդունուին այդ նախապայմանները: Այս ազդարարութիւնը սպառնալիք մը կը համարուի, այն իմաստով թէ Անգլիա ետ պիտի առնէ Եգիպտոսի անկախութեան ճանաչումը (1922), եթէ Վաֆտը տեղի չտայ: Նահաս փաշա Թագաւորին ներկայանալով բողոքեց այս «վերջնագրին» դէմ:

## Ազգերու Դաշնակցութեան որոշումները

Ուրբաթ օր փակուեցաւ Ա. Դ. Խորհուրդին 90րդ նստաշրջանը եւ պատուիրակները բաժնուեցան լաւագոյն տրամադրութիւններով: Տանցիկի հարցը «լուծուեցաւ», թերեւս տասներորդ անգամն ըլլալով: Տանցիկի ծերակոյտին նախագահը խոստացաւ համակերպիլ Ազգերու Դաշնակցութեան բաղձանքներուն: Խ. Միութեան եւ Ուրուկուէյի միջեւ ծագած վէճը անուշի կապուեցաւ, առկախ ձգելով այն հարցը թէ անդամ պետութիւն մը իրաւունք ունի՞ խզելու իր դիւանագիտական յարաբերութիւնները, առանց նախապէս իր գանգատները յայտնելու Ազգամժողովին: Վիճաբանութեանց ընթացքին, Ուրուկուէյի պատուիրակը մերժեց ներկայացնել իր ամբաստանութեանց փաստերը, յայտարարելով թէ ներքին խնդիրներ են եւ կապ չունին Ազգերու Դաշնակցութեան ուխտին հետ:

*** Խորհուրդը զբաղեցաւ նաեւ Հայրենազուրկ տարագիրներու հարցով եւ նորէն գոհացաւ առժամեայ տնօրինութիւններով, քանի որ տեւական միջոցներ սահմանելու իրաւասութիւնը կ'իյնայ ընդհ. Ժողովին: Որոշուեցաւ նոր լիազօր մը նշանակել գերման գաղթականներուն համար, անգլիացի վարիչը հրաժարած ըլլալով: Ֆրանսայի ներկայացուցիչը կարգ մը դիտողութիւններ ներկայացուց, դիտել տալով թէ գաղթականներ կան որոնք իրենց հայրենիքէն հեռացած են վաւերացուած անցագիրներով, բայց հիմա կը զրկուին նոյն թուղթերէն, հետեւաբար կը դառնան հայրենազուրկ (հայմաթլոս կամ ափաթրիտ): ՀԵՏԵՒԱԲԱՐ ՖՐԱՆՍԱ ՊԻՏԻ ԱՌԱՋԱՐԿԷ ՅԱՌԱՋԻԿԱՅ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԻՆ ՈՐ ՍԱՀՄԱՆԱՓԱԿՈՒԻ ՊԵՏՈՒԹԵԱՆՑ ԻՐԱՒՈՒՆՔԸ՝ ԻՐԵՆՑ ՔԱՂԱՔԱՑԻՆԵՐԸ ՀՊԱՏԱԿՈՒԹԵՆԷ ԶՐԿԵԼՈՒ ՄԱՍԻՆ:

Ժողովին փակման պահուն, Պ. Թիթուլեսքու առաջարկեց խորհուրդին մայիսի նստաշրջանը գումարել Պուքրէշի մէջ:

### ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՈՍՏԻԿԱՆ ՄԸ ՍՊԱՆՆՈՒԵՑԱՒ Պուքրէշի մէջ եւ ուրիշ բազմաթիւ մարդիկ վիրաւորուեցան, երբեւ հետեւանք հակահրէական խռովութեանց, որոնց գլուխը անցած էին ուսանողները: Այս վերջինները, քանի մը հարիւր հոգի, ատրճանակներով եւ բիրերով զինուած, խանգարեցին ժողով մը եւ լոյսերը մարելով, զարկին աջ եւ ձախ: Կռիւը շարունակուեցաւ 45 վայրկեան:

ԱՆԳԼԻՈՅ ԹԱԳԱՒՈՐԻՆ մահուան առթիւ, գործի վրայ են նամակադրոշմներու հաւաքիչները: Եօթը հազար նամակադրոշմներ տպուած են ձորձ Ե.ի օրով:—150,000 հոգի այցելեցին ուրբ. օր, Ուէսթմինսթրի դահլիճը, ուր ցուցադրուած է հանգուցեալ Թագաւորին մարմինը: Նոր Թագաւորն ալ առանձին այցելեց մօրը հետ: Ցուղարկաւորութեան առթիւ, Ֆրանսայի կողմէ Լոնտոն պիտի երթան հանրապետութեան նախագահը, վարչապետը, արտաքին եւ ծովային նախարարները եւ ուրիշ երեւելիներ, ուղեկցութեամբ երկու Թորփիլահալածներու: Խ. Միութեան կողմէ ներկայ պիտի ըլլան Պ. Լիթվինով եւ մարաջախտ Թուխաչեւսկի: Առաջին անգամ է որ խորհրդային իշխանութիւնը կը մասնակցի Թագաւորի մը յուղարկաւորութեան:

1863 ՁԿՆՈՐՍՆԵՐ ԵՒ 1480 ձկեր, որոնք սառնակոյտի մը վրայ կը գտնուէին, Կասպից ծովուն մէջ, քշուեցան դէպի ծովուն բացերը:

262.076.017 ՖՐԱՆՔ քուէարկուեցաւ 1937ի ցուցահանդէսին համար, որուն պատրաստութիւնները յառաջ կը տարուին մեծ փութաջանութեամբ:

### Հ. Յ. Դ.

#### Փարիզ

ԱԼՖՈՐՎԻԼԻ «Սարգիս Մինասեան» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները 27 յունուար, երկուշաբթի երեկոյ ժամը 8.30ին «Հայ Ակումբ»ի մէջ:

Տէր եւ Տիկ. Մելինէ եւ Արտաշէս Պիպէռեան ու զաւակները՝ Արա եւ Սօնա, Տէր եւ Տիկ. Անահիտ եւ Լեւոն Ջորմիսեան ու զաւակները՝ Վահրամ եւ Զաւէն, ինչպէս եւ պարագաները խոր ցաւով կը յայտնեն իրենց մօր, մեծմօր եւ ազգականին

ՏԻԿ. ՄԱՆՈՒՇԱԿ ՄԱՐԳԱՐԵԱՆԻ

մահը՝ որ տեղի ունեցած է Հալէպ, յունուար 9ին, Ալթունեան հիւանդանոցին մէջ:











Imprimerie A. DER (AGOPIAN)
17. Rue Daviesme, PARIS (13)
Le Gérant: H. STEPHAN

